Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 23 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32. ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 12—27։


# ՍՏԱԼԻՆՅԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՅԻ ՕՐԸ

*Տասներկու տարի է մեզ բաժանում այն նշանավոր օրից, երբ Սովետների համամիութենական 8-րդ արտակարգ համագումարը հավանություն տվեց ու հաստատեց ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիան՝ Սովետական պետության Հիմնական Օրենքը։*

*Սովետական բազմազգ ժողովուրդը նոր Կոնստիտուցիան նրա մեծ ստեղծողի անունով իրավացիորեն անվանեց Ստալինյան Կոնստիտուցիա։*

*Ընկեր Ստալինի նախաձեռնությամբ ՍՍՌՄ Սովետների 7-րդ համագումարը 1935 թվի փետրվարի 6-ին որոշում կայացրեց Կոնստիտուցիան փոփոխելու մասին։*

*Ընկեր Ստալինի նախագահությամբ ստեղծված հատուկ կոնստիտուցիոն հանձնաժողովը, մշակեց նոր Կոնստիտուցիայի նախագիծը։ Ավելի քան հինգ ամիս տևեց նոր Կոնստիտուցիայի նախագծի համաժողովրդա-*

կան քննարկումը։ Սովետական ժողովուրդը ջերմորեն ողջունեց ու պաշտպանեց նոր Կոնստիտուցիայի նախագիծը։

1936 թվի նոյեմբերին հրավիրվեց Սովետների Համամիութենական ութերորդ արտակարգ համագումարը։ Նոր Կոնստիտուցիայի նախագծի մասին զեկուցումով հանդես եկավ ընկեր Ստալինը։ Համագումարը միահամուռ հավանություն տվեց ու հաստատեց Կոնստիտուցիայի նախագիծը։

«Սովետների երկիրը,— ասաց ընկեր Ստալինը,— այսպիսով ստացավ նոր Կոնստիտուցիա, սոցիալիզմի և բանվորա-գյուղացիական դեմոկրատիայի հաղթանակի Կոնստիտուցիան»։

Ստալինյան Կոնստիտուցիայի մեջ օրենսդրական կարգով ամրապնդված են սոցիալիզմի հոյակապ հաղթանակները, որոնք սովետական երկրի աշխատավորները ձեռք են բերել Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ։

Ընկեր Ժդանովի պատկերավոր արտահայտությամբ, Կոնստիտուցիայի մեջ «հանճարեղ Ստալինի մտքով, ինչպես մի հրաշալի գանձարանում, հավաքված են մեր Սովետական Միության աշխատավորների պայքարի բոլոր արդյունքները»։



Ստալինյան նոր Կոնստիտուցիայի ընդունումը նշանակում էր, որ Սովետական երկիրը թևակոխում էր իր զարգացման նոր շրջանը, սոցիալիստական անդասակարգ հասարակության կառուցման ավարտման և սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիան հաստատեց հասարակական կյանքի նոր ձև։ Շահագործող դասակարգերի լիկվիդացումը, արտադրության բոլոր միջոցների հանձնումը աշխատավոր դասակարգերի ձեռքը, արմատապես փոխեցին կյանքի պայմանները և զարգացման նոր հեռանկարներ բաց արեցին մեր երկրի առաջ։

Ստալինյան Կոնստիտուցիան օրենսդրականորեն ամրապնդեց սոցիալիստական նոր հասարակակարգի հիմունքները։ Կոնստիտուցիան սահմանեց, որ մեր հասարակության մեջ այլևս չկան անտագոնիստական դասակարգեր, որ հասարակությունը բաղկացած է երկու բարեկամ դասակարգից՝ բանվոր դասակարգից ու գյուղացիությունից և նրանց միջից աճած ժողովրդական ինտելիգենցիայից։ Մեր երկրի բանվոր դասակարգը զրկված չէ արտադրության միջոցներից, ինչպես կապիտալիստական երկրներում, այլ հանդի-

տանում է արտադրության միջոցների տերը։ ՍՍՌՄ բանվոր դասակարգը սովետական հասարակության առաջավոր, առաջատար դասակարգն է։ Սովետական գյուղացիության ճնշող մեծամասնությունը բաղկացած է կոլխոզնիկներից, որոնց տնտեսությունը հիմնըվում է ոչ թե մասնավոր սեփականության ու անհատական աշխատանքի վրա, այլ հանրային կոոպերատիվ-կոլխոզային սեփականության և կոլեկտիվ, սոցիալիստական աշխատանքի վրա։ Սովետական ինտելիգենցիան արմատապես տարբերվում է հին ինտելիգենցիայից, նա հարազատ կապերով կապված է բանվորների ու գյուղացիների հետ և նրանց հետ միասին ակտիվորեն մասնակցում է նոր կյանքի կառուցմանը։

ՍՍՌՄ-ն բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետություն է, նոր տիպի պետություն։ Մեր երկրում ամբողջ իշխանությունը պատկանում է քաղաքի և գյուղի աշխատավորներին՝ հանձին աշխատավորների դեպուտատների Սովետների։ Կոնստիտուցիայի մեջ նշված է, որ ՍՍՌՄ քաղաքական հիմքը կազմում են աշխատավորների դեպուտատների Սովետները, որոնք աճել ու ամրապնդվել են կալվածատերերի ու կապիտալիստների իշխանության տապալման և պրո-



լետարիատի դիկտատուրայի հաստատման հետևանքով։ Սովետների միջոցով ժողովրդական լայն մասսաներն ակտիվորեն մասնակցում են երկրի քաղաքական կյանքին, պետության կառավարմանը։

Ստալինյան Կոնստիտուցիան, որի մեջ իրենց արտացոլումն են գտել սոցիալիզմի վճռական հաջողությունները, հաստատել է ամենահետևողական, ամենալիակատար ու կայուն դեմոկրատիզմ, որն իրականացված է ՍՍՌՄ-ում։ Կոնստիտուցիան սահմանեց նոր ընտրական սիստեմ, որ ամենադեմոկրատականն է ամբողջ աշխարհում։ Ստալինյան Կոնստիտուցիան հաստատեց ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունք գաղտնի քվեարկությամբ։ Կոնստիտուցիան բոլոր քաղաքացիներին տվել է քաղաքական իրավունքներ ու ազատություն, ինչպիսին չի տալիս և չի կարող տալ բուրժուական պետությունների և ոչ մի կոնստիտուցիա։

Բուրժուական պետությունների կոնստիտուցիան օրենսդրականորեն ամրապնդում է այն կարգերը, որոնք հաճելի ու ձեռնտու են կառավարող դասակարգերին. նրանց հռչակած դեմոկրատիան դատարկ դեկլարացիա է։ «Դեմոկրատիան կապիտալիստական երկրներում, որտեղ կան հակամարտ դասա-

կարգեր,— նշում է ընկեր Ստալինը,— վեր-
ջին հաշվով, դեմոկրատիա է ուժեղների հա-
մար, դեմոկրատիա է ունևոր փոքրամասնու-
թյան համար։ Դեմոկրատիան ՍՍՌՄ-ում,
ընդհակառակը, դեմոկրատիա է աշխատա-
վորների համար, այսինքն դեմոկրատիա է
բոլորի համար»։

Բուրժուական կոնստիտուցիաները դեմո-
կրատական իրավունքներ չեն տրամադրում
աշխատավորների լայն մասսաներին։ Գույ-
քային և կրթական ցենզի, ազգային ու այլ
սահմանափակումների միջոցով բուրժուա-
կան պետությունների կոնստիտուցիան քա-
ղաքական իրավունքներից զրկում է աշխա-
տավոր բնակչության հսկայական մասսանե-
րին։ Բուրժուական դեմոկրատիան, նշում է
Վ. Ի. Լենինը «միշտ մնում է, և կապիտալիզ-
մի օրոք չի կարող չմնալ նեղ, կրճատված,
սուտ, կեղծավոր, հարուստների համար
դրախտ, շահագործվողների, չքավորների
համար՝ թակարդ ու խաբեություն»։

Ստալինյան Կոնստիտուցիան, ելնելով աշ-
խատավորների շահերից և սոցիալիստական
հասարակակարգն ամրապնդելու շահերից,
ՍՍՌՄ բոլոր քաղաքացիներին երաշխավո-
րում է խոսքի, մամուլի, ժողովների ու մի-
տինգների, հրապարակային ցույցերի ազա-



տություն։ Կոնստիտուցիան երաշխավորում է
աշխատանքի, հանգստի, կրթության իրա-
վունք, նյութական ապահովվածություն՝ ծե-
րության հասակում և հիվանդության ժամա-
նակ։ ՍՍՌՄ-ում կանանց տղամարդկանց
համահավասար իրավունքներ են վերապահ-
ված տնտեսական, պետական, կուլտուրա-
կան, հասարակական, քաղաքական կյանքի
բոլոր բնագավառներում։

Ստալինյան Կոնստիտուցիան իր բնույթով
խորապես ինտերնացիոնալ է, Կոնստիտու-
ցիան բոլոր ազգերին ու ռասաներին համա-
հավասար իրավունքներ է տվել տնտեսական,
պետական և կուլտուրական կյանքի բոլոր
ասպարեզներում։ Սովետական իշխանությու-
նը միլիոնավոր աշխատավորներին ազատել
է ազգային-գաղութային ճնշումից, վերաց-
րել է ժողովուրդների տնտեսական ու կուլ-
տուրական հետամնացությունը և նյութական
պայմաններ է ստեղծել ՍՍՌՄ բոլոր ժողո-
վուրդների տնտեսության ու կուլտուրայի
իսկական ծաղկման համար։

Սովետական Կոնստիտուցիան ո՛չ միայն
ձևականորեն հռչակում է այդ իրավունքները,
այլև բոլոր անհրաժեշտ նախադրյալներն ու
նյութական պայմաններն ստեղծում է դրանք

լիովին օգտագործելու համար։ Ստալինյան Կոնստիտուցիան իրավունքներ վերապահելով միասին, ՍՍՌՄ քաղաքացիներին պարտավորեցնում է պահպանել սովետական պետության օրենքները, աշխատանքային կարգապահությունը, ազնվորեն վերաբերվել հասարակական պարտքին, պահպանել ու ամրապնդել սոցիալիստական սեփականությունը, սրբությամբ պաշտպանել սոցիալիստական Հայրենիքը։

Ստալինյան Կոնստիտուցիայի մեջ վառ կերպով արտացոլված են սոցիալիզմի այնպիսի մեծագույն նվաճումներ, ինչպես սոցիալիստական հայրենասիրությունը, սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, մեծ Սովետական Միության մեջ բնակվող ժողովուրդների անխախտ բարեկամությունը։

Ստալինյան Կոնստիտուցիան անցած ուղու արդյունք հանդիսանալով, միևնույն ժամանակ հզոր զենք է, որը սովետական ժողովրդին մոբիլիզացնում է նորանոր սխրագործությունների։

Հիտլերյան Գերմանիայի դեմ մղված Հայրենական Մեծ պատերազմի տարիներին մեր երկրի ժողովուրդները, Ստալինյան Կոնստի-



տուցիայի դրոշի տակ, ռազմական ու տնտեսական փայլուն հաղթանակ տարան ֆաշիզմի դեմ և ապահովեցին ո՛չ միայն մեր Հայրենիքի ազատությունը, անկախությունը, այլև Եվրոպայի ու Ասիայի ժողովուրդներին փրկեցին ֆաշիստական ստրկությունից։ Ստալինյան հնգամյակների տարիներին սովետական ժողովուրդն իրագործեց սոցիալիստական էկոնոմիկայի ստեղծման, ժողովրդական կրթության, գիտության, կուլտուրայի և արվեստի վերելքի հոյակապ ծրագիրը։

Այն նշանակալից հաջողությունները, որ մեր երկրի աշխատավորները ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ձեռք են բերել հնգամյակի երրորդ, վճռական տարվա պլանը ժամկետից շուտ կատարելու գործում, երաշխիք են տալիս հետպատերազմյան ստալինյան հնգամյակը չորս տարում իրագործելու համար։ Սովետական մարդիկ իրենց հերոսական աշխատանքով ամրապնդում են սոցիալիստական պետության հզորությունը և կապիտալիստական երկրների աշխատավորական մասսաների մեջ ամրապնդում են հավատը կոմունիզմի հաղթանակի նկատմամբ։

Ռեակցիայի մոլեգնման և նոր պատերազմի նախապատրաստման ֆոնի վրա առանձնահատուկ ուժով է զգացվում Ստալինյան Կոնստիտուցիայի միջազգային մեծ նշանակությունը։ Գործողությունների մարտական ծրագիր հանդիսանալով, Ստալինյան Կոնստիտուցիան նշում է պայքարի ու հաղթանակների ուղին։ Արտասահմանյան երկրների աշխատավորները հանձին ՍՍՌՄ Կոնստիտուցիայի տեսնում են իրենց նվիրական ձգտումների իրագործման ապացույցը և ավելի ու ավելի են համոզվում, որ այն, ինչ որ իրագործված է ՍՍՌՄ-ում, կարող է հաջողությամբ իրագործվել նաև մյուս երկրներում։

***

Ստալինյան Կոնստիտուցիայի Օրը Հայաստանի աշխատավորները դիմավորում են նորանոր նվաճումներով։ Վերջերս տեղի ունեցած Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիայի 14-րդ համագումարը, հանրագումարի բերեց արդյունաբերության, գյուղատնտեսության, ժողովրդական կրթության, կուլտուրայի, գիտության, արվեստի ասպարեզում ձեռք բերված լուրջ հաջողությունները։



Սոցիալիստական մրցության մեջ մտնելով ձեռնարկությունների կոլեկտիվները պայքարում են արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու համար։ Շատ ձեռնարկություններ, կատարելով համախառն արտադրանքի տարեկան պլանը, պետությանը տվել են գերպլանային կուտակումներ։ Դրանց թվում են Կիրովի անվան գործարանը, Երևանի Կաբելի գործարանը, Մուլիտի գործարանը և ուրիշներ։ Ռեսպուբլիկան նշանակալից հաջողություններ է ձեռք բերել գյուղատնտեսության ասպարեզում. ժամկետից շուտ կատարված է հացամթերումների, խաղողի, մետաքս-հումքի հանձնման պլանը և այլն։

Սոցիալիզմի մեծ սկզբունքները մարմնավորած Ստալինյան Կոնստիտուցիան հայ ժողովրդին, որպես մեծ Սովետական Միության իրավահավասար անդամի, ապահովել է ազատություն ու ազգային անկախություն։ Սովետական հասարակակարգի շնորհիվ հնարավոր դարձավ բազմահազար հայերի վերադարձը Սովետական Հայաստան, որոնք երկար տարիներ օտարության մեջ զրկված էին մարդկային տարրական իրավունքներից։ Ներկայումս հայրենադարձ հայերը վայելում են

Ստալինյան Կոնստիտուցիայի տրամադրած բոլոր իրավունքները և Հայաստանի աշխատավորների հետ միասին ակտիվորեն պայքարում են մեր Հայրենիքի հզորության հետագա ամրապնդման համար։

Մեծ է Ստալինյան Կոնստիտուցիայի մոբիլիզացնող նշանակությունը։ Կոնստիտուցիան մեր բանվոր դասակարգին, մեր գյուղացիությանը, մեր աշխատավոր ինտելիգենցիային զինում է, առաջ է շարժում ու նրանց մեջ բարձրացնում օրինական հպարտության զգացմունքը, ամրապնդում է հավատը իրենց ուժերի նկատմամբ և աշխատավորներին նոր պայքարի է մոբիլիզացնում կոմունիզմի նորանոր հաղթանակներ նվաճելու համար։

---



## Ս. Մ. ԿԻՐՈՎԻ ԱՆՎԱՆ ԳՈՐԾԱՐԱՆԻ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ ԱՐՏԱՊԼԱՆԱՅԻՆ ԿՈՒՏԱԿՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Սոցիալիստական արտապլանային կուտակումների համար մոսկվացիների հայրենասիրական նախաձեռնությամբ ծավալված համաժողովրդական շարժումը ջերմ պաշտպանություն գտավ Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվում։

Հասնել արտապլանային կուտակումների —այդ նշանակում է խիստ խնայողություն կատարել հումքի, նյութերի, վառելանյութի, էլեկտրաէներգիայի ծախսման գործում, կրճատել վարչական ծախսերը։ Խնայողությունն անհրաժեշտ է ամենուրեք և ամեն բանում. խնայողության ռեժիմը տնտեսվարության սոցիալիստական հանրածանոթ մեթոդ է։ Այդ ռեժիմի իրականացումը պահանջում է ո՛չ միայն կրճատել բոլոր ոչ-արտադրողա-

կան ծախսերը, այլև անընդհատ հայտաբերել կուտակման նորանոր աղբյուրներ, ապահովել գործարանի ռիթմիկ աշխատանքը։

Արտապլանային կուտակումների համար մղվող պայքարում պատվավոր տեղ ունեն ագիտատորները։

Ս. Մ. Կիրովի անվան գործարանում կազմակերպված է 20 ագիտկոլեկտիվ, որոնց մեջ ընդգրկված են 137 ագիտատոր։ Ագիտատորների մեծ մասը բարձրագույն կրթություն ունեցող ինժեներա-տեխնիկական աշխատողներ են, որոնք լավ գիտեն տեխնոլոգիական պրոցեսը, հասկանում են արտադրության էկոնոմիկան։ Դա նրանց հնարավորություն է տալիս իրենց զրույցները սերտորեն կապելու ցեխերի ու գործարանի կյանքի հետ, իրենց զրույցները հագեցնելու համոզիչ փաստերով ու օրինակներով։

Խնայողության և շահութաբերության համար մղվող պայքարի հարցերը գտնվում են գործարանի ագիտկոլեկտիվների և ագիտատորների ուշադրության կենտրոնում։

№ 1—8 ցեխի ագիտկոլեկտիվի սեմինարում (ագիտկոլեկտիվի ղեկավար՝ ընկ. Վ. Վարդանյան), որտեղ ուսումնասիրում էին Մոսկվայի արդյունաբերության աշխատողների խորհրդակցության նյութերը, ագիտա-



տորները կարծիք հայտնեցին, որ ցեխը կարող է և պետք է աշխատի է՛լ ավելի շահութաբեր կերպով, դրա համար անհրաժեշտ է միայն տնտեսվարորեն հաշվի առնել բոլոր հնարավորությունները, հմտորեն օգտագործել ներքին ռեսուրսները, ցեխի բանվորներին և ինժեներա-տեխնիկական աշխատողներին ներգրավել ինքնարժեքի իջեցման համար մղվող պայքարի մեջ։

Այդ ցեխի ագիտատորներ ընկ. ընկ. Պ. Հակոբյանը, Վ. Մարտիրոսյանը, Վ. Ջերնովը բոլոր հերթափոխերում և բրիգադաներում զրույցներ անցկացրին Մոսկվայի առաջավոր ձեռնարկությունների նախաձեռնության մասին, բանվորներին բացատրեցին, որ իրենց ցեխում շահութաբեր աշխատանքի հասնելու համար անհրաժեշտ է պայքարել հիմնական հումքի գերածախսի դեմ։ Իսկ դրան կարելի է հասնել տեխնոլոգիական պրոցեսը ճիշտ կազմակերպելու, տեխնոլոգիական պրոցեսի մեջ կատարելագործումներ մտցնելու միջոցով։

Ագիտատորներն ամեն օր հանրագումարի բերելով յուրաքանչյուր հերթափոխի աշխատանքի արդյունքները, կոնկրետ կերպով բացահայտում էին կորուստների պատճառները, մատնացույց անում ռեժիմը խախտողներին,

ինչպես նաև լավագույն բրիգադաների ու հերթափոխների օրինակներով ցույց էին տալիս, թե ինչպես պետք է աշխատել ավելի շատ խնայողության հասնելու համար։ Այդ ցեխի առանձին ագիտատորներ ընկ. ընկ. Մ. Պիշչուրինան, Կ. Կանայանը, ցեխային պարտկազմակերպության քարտուղարի հետ միասին, լույս են ընծայում «Կայծակ» թերթիկ, որտեղ ցույց են տալիս ցեխի լավագույն աշխատողներին, ժողովրդականացնում նրանց մեթոդները, ժամանակին մատնացույց անում վատ աշխատողներին և տեխնոլոգիական ռեժիմը խախտողներին։ Ագիտկոլեկտիվի ղեկավարը գործարանի պլանային բաժնից և գլխավոր հաշվապահությունից վերցնելով վերջին ամիսների ընթացքում պլանի կատարման և խնայողության վերաբերյալ տվյալները, ագիտատորների հետ միասին քննել է այդ տվյալները։ Այդ բոլորը նպաստեց գործի հաջողությանը և դրանից հետո ագիտատորները կարողացան բանվորներին ցույց տալ, թե ինչպես ցեխն ամսեամիս բարձրացնում է արտադրության տեմպը, բարելավում է հումքի և էլեկտրաէներգիայի խնայողության ցուցանիշները։

Այսպիսով, 1—8 ցեխը ո՛չ միայն վերացրեց հիմնական հումքի կորուստները, այլև



հինգ ամսվա ընթացքում մեծ խնայողություն կատարեց և հոկտեմբեր ամսին հասավ լավագույն ցուցանիշների, տալով շատ թանկ հիմնական նյութի 677 տոննա խնայողություն։

Սոցիալիստական կուտակումների գլխավոր աղբյուրներից մեկը աշխատանքի արտադրողականության աճն է։ № 2—1 ցեխի ագիտատոր, անվանի ստախանովական Գ. Գյուլեցյանը, որը գերակատարել է իր հնգամյա առաջադրանքը, հաճախ իր աշխատանքի փորձի փոխանակություն է կատարում, նա իր զրույցները միշտ կապում է ցեխի գործնական աշխատանքի հետ։ Այդ ցեխում Գյուլեցյանի օրինակով սկսել են աշխատել Գ. Լիպիլկինը, Մ. Բոյաջյանը, Ռ. Պետրոսյանը և ուրիշ բանվորներ, որոնք այժմ կատարում են երկու և ավելի արտադրական նորմա։

№ 1—7 ցեխում ագրեգատներն սպասարկում էին երկու բրիգադա՝ բաղկացած 12 փականագործից։ Այդտեղ ագիտատոր Ս. Մխիթարյանի նախաձեռնությամբ կազմակերպվել է երկու բրիգադա՝ ընդամենը 5 մարդ, որոնք աշխատում են Խալիլովի և Հարությունյանի ղեկավարությամբ ու հաջողու-

*թյամբ կատարում են 12 փականագործի աշխատանքը։*

*№ 1—11 ցեխի ագիտկոլեկտիվը (ղեկավար՝ ընկ. Ներսիսյան) իր առաջ խնդիր դրեց՝ խոտանը վերացնելու և թողարկվող արտադրանքի որակը բարելավելու միջոցով տալ 600 հազար ռուբլու արտապլանային կուտակում։ Այդ ցեխի ագիտատորներ Վ. Բաղդասարյանը, Մ. Բախշինյանը, Մ. Ներսիսյանը և ուրիշներ իրենց ամենօրյա զրույցներում ցույց են տալիս խոտանի պատճառները, դրանք վերացնելու մեթոդները և թողարկվող արտադրանքի որակը բարձրացնելու ուղիները։ Այդ բոլորի հետևանքով ցեխը խոտան չի տալիս և առաջին տեսակի արտադրանքը պլանով նախատեսված 75 տոկոսի փոխարեն հասցրել է մինչև 97 տոկոսի։ Դա զգալիորեն ավելացրել է արտապլանային կուտակումները։*

*Գործարանում արտապլանային կուտակման համար մղվող պայքարում կարևոր տարրերից մեկն էլեկտրաէներգիայի խնայողությունն է։ № 2—7 ցեխի ագիտկոլեկտիվի ղեկավար ընկ. Պ. Հակոբյանը ագիտատորների օգնությամբ յուրաքանչյուր բանվորի գիտակցությանը հասցրել է այն միտքը, որ էլեկտրաէներգիայի խնայողության հիմնա-*



*կան միջոցները ագրեգատների բեռնվածության ավելացումն է, բարձր գործակցի պահպանումը, ագրեգատների դատարկ պտույտի կրճատումը, կորուստների կրճատումը էլեկտրական ցանցում և սարքերում, ինչպես նաև էլեկտրասարքավորման նորոգման որակի և սպասարկման բարելավումը։ Ագիտատոր Վ. Հովհաննիսյանը, իր հնգամյա առաջադրանքը կատարած էլեկտրիկների ցեխի բրիգադիրը, անձնական օրինակով և բարձրորակ նորոգումով ցեխի մնացած բանվորներին օգնել է գերակատարելու արտադրական առաջադրանքները ու էլեկտրաէներգիայի մեծ խնայողություն տալու։ Այսպիսով այս տարվա տաս ամիսների ընթացքում գործարանը 3 միլիոն 184 հազար կիլովատժամ էլեկտրաէներգիայի խնայողություն է կատարել։*

*Ձեռք բերված արդյունքները կարող էին է՛լ ավելի մեծ լինել, եթե բոլոր ցեխերի ագիտատորները հատուկ ուշադրություն դարձնեին խնայողության գործում եղած բոլոր հնարավորությունները օգտագործելու վրա։ Այսպես № 1—3 ցեխը թեև հասել է էլեկտրաէներգիայի որոշ խնայողության, բայց դեռևս գերածախս ունի։*

Արտադրանքի ինքնարժեքի իջեցման, հետևաբար նաև արտապլանային կուտակումների ավելացումն ապահովող հիմնական պայմանը ռացիոնալիզացիայի և գյուտարարության լայն կիրառումն է արտադրության մեջ։

№ № 1—3, 1—5, 1—8, 1—10 և այլ ցեխերի ագիտատորներն իրենց ագիտացիոն զրույցներում կոնկրետ ցույց էին տալիս գործարանի բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների արած առանձին ռացիոնալիզատորական առաջարկությունների էֆեկտիվությունը։ Ընթացիկ տարվա տաս ամիսների ընթացքում գործարանում կիրառված է մի քանի տասնյակ ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնք արդեն գործարանին տվել են 2,3 միլիոն ռուբլու խնայողություն և կտան մոտ 11 միլիոն ռուբլու տարեկան խնայողություն։

Պարտիական կազմակերպության կատարած ագիտացիոն-մասսայական աշխատանքը բարձրացրել է գործարանի յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը և աշխատանքային խանդավառությունը։ Ծավալելով սոցիալիստական մրցումը, խորապես ներթափանցելով արտադրության էկո-



նոմիկայի մեջ և մոբիլիզացնելով ներքին ռեսուրսները, գործարանի կոլեկտիվը Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարը դիմավորեց պլանը 115,3 տոկոսով կատարած։ Իսկ Հայաստանի սովետականացման 28-րդ տարեդարձի նախօրյակին՝ նոյեմբերի 26-ին կատարվեց համախառն արտադրանքի տարեկան պլանը։ Այս տարվա տասնմեկ ամիսների ընթացքում խնայված է մոտ 1800 տոննա հիմնական հումք, 17.000 տոննա գոլորշի, 1500 տոննա պայմանական վառելանյութ և մոտ 3 միլիոն 400 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Եթե մենք առաջ ենթադրում էինք տալ երեք միլիոն ռուբլու արտապլանային կուտակում, իսկ այնուհետև, հաշվի առնելով երկրորդ կիսամյակի հնարավորությունները, մենք պարտավորվեցինք այդ գումարը հասցնել չորս միլիոն ռուբլու, ապա կրկին անգամ ստուգելով մեր հնարավորությունները, մենք համոզվեցինք, որ մեր գործարանը կարող է և պետք է 1948 թվին տա 7 միլիոն ռուբլու արտապլանային կուտակում։ Ամբողջ կոլեկտիվի անձնազոհ աշխատանքի շնորհիվ

գործարանը Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարի բացման օրը արդեն տվեց 5 միլիոն ռուբլու արտապլանային կուտակում և մինչև տարվա վերջը պատվով կկատարի իր խոստումը ու արտապլանային կուտակումների պլանը կհասցնի 7 միլիոն ռուբլու։

Վ. ԽՈՒԲԼԱՐՅԱՆ

(ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պարտկազմակերպիչ Ս. Մ. Կիրովի անվան գործարանում)

---

*ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ*

## ԿԱԹՆԱՂԲՅՈՒՐԻ ԱՌԱՋԱՎՈՐ ԱՆԱՍՆԱՊԱՀՆԵՐԸ

*Ստեփանավանի շրջանի Կաթնաղբյուր գյուղի կոլխոզի կովաբուծական ֆերման շատ կաթ է տալիս հարազատ պետությանը և շատ կաթնամթերք է բաշխում կոլխոզնիկներին աշխօրերի դիմաց։*

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով Կաթնաղբյուրի 17-րդ պարտհամագումարի անվան կոլխոզի անասնապահներից 19 հոգի պարգևատրվել են «Աշխատանքային արիության համար» մեդալներով։ Պարգևատրվածների թվումն են ֆերմայի վարիչ Մ. Մանուկյանը, զոոտեխնիկ Կ. Կիրակոսյանը, ֆերմայի բրիգադիր Հ. Իսրայելյանը, հովիվ Ն. Սարգսյանը, կթվորուհի Ե. Ամիրխանյանը և ուրիշները։*

*Նրանց, այդ ազնիվ կոլխոզնիկների համար հեշտ չի եղել բարձր պարգևի արժանանալը։ Նրանք երկար, քրտնաջան աշխատանք են տարել և հասել են կովերի բարձր կաթնատվության։ Կարևորը, որ նկատելի է նր-*

րանց աշխատանքի մեջ, այդ այն է, որ նրանք միշտ և համառորեն նոր ուղիներ են որոնում կովերի կաթնատվությունը բարձրացնելու համար։

Ահա փաստերը։

Կովաբուծական ֆերմայում անասնաբուծության զարգացման պլանը կատարված է 125 տոկոսով։ Ծնված 140 հորթերի խնամքը օրինակելի է կազմակերպված, նրանք ժիր են և գեր։ Հորթը ծնված օրից անջատում են մորից և կերակրում են առանձին. դա զգալի չափով նպաստել է կովերի կաթնատվության բարձրացմանը։

Պլանով նախատեսված է յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստանալ 20 ցենտներ կաթ։ Միայն 8 ամսում ֆերման արդեն ստացել է 21,42 ցենտներ։ Այժմ ֆերմայի աշխատողները ձգտում են յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը հասցնել 27 ցենտների։

Մեդալակիր Ե. Ամիրխանյանը, որը խնամում է 11 կով, ոչ մի հորթի կորուստ չի տվել։ Անցյալ տարի նախատեսված 18 ցենտներ կաթի դիմաց ամեն մի կովից ստացել է 23,60 ցենտներ կաթ։ Անհամեմատ բարձր է Ամիրխանյանի խնամած կովերի կաթնատվությունն այս տարի. ամեն մի կովից միջին



թվով նա ստացել է 31 ցենտներ կաթ։ Նրա «Նուշիկ» կովը, որը անցյալ տարի տվել էր 39,75 ցենտներ կաթ, այս տարվա միայն 8 ամսվա ընթացքում տվել է նույն քանակությամբ կաթ, իսկ «Ցուլուն» կովն անցյալ տարվա 29 ցենտների փոխարեն տվել է 36,8 ցենտներ կաթ։

Իր երկարամյա աշխատանքի ընթացքում կթվոր Ե. Ամիրխանյանը եկել է այն եզրակացության, որ «կոճկիթը» բացասաբար է ազդում կովերի կաթնատվության բարձրացման վրա, տրորվում են կովերի պտուկները, հաճախակի վերքեր առաջանում։ Այդ բանը նկատի ունենալով նա այժմ կատարում է «բռնցքակիթ» և հետևանքը նկատելի է։ Այդ ձևով ոչ միայն ավելի շատ կաթ է ստացվում, այլև առողջ են մնում կովի պտուկները։

Ընկ. Ամիրխանյանը ամեն օր սանրում է կովերին, մաքրում, իսկ շոգ օրերին՝ լողացնում։ Ամռանը նա կովերը կթում է օրը երեք անգամ՝ առավոտյան ժամը 5—6-ը, ցերեկը՝ 1—2-ը, երեկոյան 8—9-ը։

Կոլխոզի ֆերման անցյալ տարվա նույն ժամանակի համեմատությամբ այս տարի ստացել է 110 հազար լիտր ավելի կաթ։ Կաթի հաշվառումը կատարվում է բրիգադիրների կողմից, իսկ ֆերմայի վարիչը անձամբ

ստուգում է, թե ո՞րքան կաթ է կթվում և ճի՞շտ է կատարվում հաշվառումը, թե ոչ։

Հովիվ Ն. Սարգսյանը խնամում է 50 կով, սիրում է իր գործը։ Կովերին խնամում է շատ լավ, աչքի լույսի պես։ Նա առավոտյան շուտ արոտի է քշում կովերին, իսկ կեսօրվա շոգերին արածացնում ջրի ափերին։ Արոտները բաժանված են 8 հատվածների, ամեն մի արոտում կովերին արածացնում է 10 օր, որից հետո փոխում է արոտատեղը։ Ն. Սարգսյանը ուշի-ուշով հետևում և առանձնացնում է զուգավորման ենթակա կովերին։ Հատուկ ուշադրություն է դարձնում թույլ կովերի վրա, նրանց համար առանձնացնում ավելի փարթամ արոտավայրեր։ Բարեխիղճ հովիվը ձգտում է, որպեսզի կովերը միշտ թարմ ու հյութալի խոտ ուտեն, այդ պատճառով էլ նա աշխատում է կովերը արածացնել զով ու ստվերոտ տեղերում։

Որպեսզի ամեն մի կովից շատ կաթ ստացվի և կովերն էլ հանգիստ լինեն ու ավելորդ ճանապարհ չանցնեն ֆերմայում հատուկ կարգ է սահմանված՝ կովերին կթում են հենց արոտատեղում։

Կաթնաղբյուր գյուղի կոլխոզի ֆերման այս տարի լրիվ ապահովված է կերով։ Պլանով նախատեսված 2100 տոննա խոտի փոխա-



րեն դիզել են 2300 տոննա, պատրաստել են նաև 1005 տոննա սիլոս։ 16 հեկտար ճակնդեղի ամեն մի հեկտարից ստացվել է 250 ցենտներից ավելի բերք, որը օգտագործվելու է որպես հյութալի և թարմ կեր։

Նման աշխատանքի շնորհիվ է, որ կոլխոզը այս տարի պլանից դուրս հարաշատ պետությանն է հանձնել 75 հազար լիտր կաթ։

Ձեռք բերած նվաճումները չեն հանգստացնում Կաթնաղբյուրի առաջավոր անասնապահներին։ Կրկնապատկելով իրենց ուժերը, նրանք ձգտում են պատվով դուրս գալ ծավալված սոցիալիստական մրցությունից։

Կովաբուծական ֆերմայի վարիչ Մ. Մանուկյանը, որը Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարի դելեգատ էր, իր ելույթում ասաց. «Ընկեր Ստալինին ուղղված նամակում մենք խոսք ենք տվել, որպեսզի մեր բարձր կիթ տվող կովերի թիվը հասցնենք 30—40-ի և կաթնատվությունը հասցնենք 50 ցենտների, մենք անպայման կկատարենք այդ խոստումը»։

ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ

# ԿՈՐԵԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ

Երկրորդ համաշխարհային պատերազմի շրջանում կապիտալիստական սիստեմի ճգնաժամի հետագա խորացման հետևանքով, ավելի սրվեց և խորացավ նաև գաղութային սիստեմի ճգնաժամը։ Ընկ. Ա. Ժդանովը խոսելով այդ ճգնաժամի մասին ասում է.

«Գաղութային սիստեմի ճգնաժամի սրումը արտահայտվեց ազգային ազատագրական-շարժման հզոր վերելքի մեջ գաղութներում և կախյալ երկրներում»։

Եվ այնուհետև նշում է, որ.

«Գաղութների ժողովուրդները չեն ուզում այլևս ապրել հին ձևով»։

Ազգային-ազատագրական շարժման ժողովրդական հզոր ուժերը Չինաստանում, Հնդկաստանում, Ինդոնեզիայում և այլ երկրներում արդարացի պայքար են մղում իրենց ազատագրման ու անկախության համար։ Ճապոնական իմպերիալիզմի գաղութային ստրկական ծանր ռեժիմի դեմ մշտական բուռն պայքարի մեջ էր գտնվում նաև ազատասեր կորեական ժողովուրդը։ Նրա պայքարը հաջողությամբ պսակվեց։ Կորեական ժողովրդին ճապոնական ծանր լծից փրկեց ազատա-



րար Սովետական Բանակը, որը գլխովին ջախջախեց ճապոնական միլիտարիզմի ուժերը Մանջուրիայում և Կորեայում։

Կորեան գտնվում է նույնանուն թերակղզու և մոտ 200-ի հասնող կղզիների վրա։ Կորեայի տարածությունը հավասար է 220.740 քառ. կ. մ., որը մի փոքր է զիջում բուն Անգլիայի (244.000 քառ. կմ.) գրաված տարածությանը։ Կորեայի ցամաքը ձգվում է հյուսիսից հարավ 360 կմ. երկարությամբ, իսկ թերակղզու ամենանեղ տեղը ունի մինչև 175 կմ. լայնություն։ Կորեան ծայր հյուսիս-արևելյան մասում սահմանակից է Սովետական Միությանը։

Կորեայի ազգաբնակչությունը 1942 թ. տվյալներով կազմում է 26.298.100 մարդ։ Բնակչության խտությունը 1 քառ. կմ. վրա հասնում է 119 մարդու։ Ազգային կազմի տեսակետից Կորեան գերազանցապես կորեացիներով է բնակեցված (96,3 տոկոս) և միայն 4 տոկոսից էլ պակասը կազմում են այլազգիները։ Ճապոնական գաղութային երկարատև ծանր ռեժիմի հետևանքով բնակչության մեջ բարձր է անգրագետների տոկոսը, ցածր է բնական աճը և մեծ է նորածինների մահացության տոկոսը։ Բնակչության գերակշիռ մասը ապրում է գյուղում (86,6 տոկոս) և միայն փոքր մասը (13,4 տոկոս) քաղաքներում։ Ներկայումս Կորեայում հաշվվում է մոտ 11 քաղաք, որոնք ունեն 100.000-ից ավելի բնակիչ։ Կարևորագույն քաղաքներից են՝ Կո-

րեայի մայրաքաղաք և արդյունաբերական խոշորագույն հանգույց՝ Սեուլը՝ (1.114,000 բն.), Հյուսիսային Կորեայի վարչա-քաղաքական կենտրոն Պխենյանը (500.000 բն.), խոշորագույն նավահանգիստ և արդյունաբերական կարևոր կենտրոն Ֆուզանը՝ 326.300 բն.), խոշոր նավահանգիստ և ռազմա-ստրատեգիկ քաղաք Չեմուլպոն՝ (220.200 բն.) և այլն։

Կորեան բաժանված է 13 գավառների, 22 քաղաքային օկրուգների և 218 գավառակների։

Կորեական ժողովուրդը տասնյակ տարիներ տառապում էր գաղութային ծանր կապանքների տակ։ Ճապոնիան իր կապիտալիստական զարգացման վաղ շրջանից սկսած ձգտում էր զավթել Կորեան, վերածել այն վաճառահանման և արդյունաբերության հումք մատակարարող գաղութային երկրի։ 1876 թ. ճապոնացիները ռազմական ուժի ճնշման տակ ստիպեցին Կորեային բաց անել իր նավահանգիստները ճապոնական առևտրանավերի առաջ։ Տնտեսական ներթափանցման և Կորեայի ներքին գործերին ռազմա-քաղաքական անընդհատ կրկնվող միջամտությունների միջոցով Ճապոնիան 1907 թ. Կորեան հայտարարեց իր հովանավորության տակ գտնվող երկիր, իսկ 1910 թ. որպես գաղութի վերջնականապես կցեց իր կայսրությանը։ Կորեական ժողովրդի ցասման ամեն մի պոռթկում, բողոքի ամեն մի ելույթ ճապոնացիների կողմից ճնշվում էր բացառիկ դաժանությամբ։ Գաղութաց-



նելով Կորեան, ճապոնական իմպերիալիզմը արգելակում էր Կորեայի տնտեսական վերելքը։

Կորեայի ժողովրդական տնտեսության մեջ ներդրված կապիտալների գերակշռող մասը կենտրոնացված էր օտարերկրյա կապիտալի ձեռքում. առ 1-ն հունվարի 1939 թվի արդյունաբերության մեջ բուն կորեական կապիտալի բաժինը հազիվ կազմում էր 5—6 տոկոսը, 1939 թվին Ճապոնիայի բաժինն էր կազմում Կորեայի արտածման 96,9 տոկոսը և ներմուծման 95,1 տոկոսը։

Կորեայի ժողովրդական տնտեսության մեջ գերակշռող դեր է խաղում ագրարային տնտեսությունը։ Նա խարսխված է պրիմիտիվ գործիքների օգտագործման բազայի վրա։ Կորեայում մշակվում է ամբողջ տարածության մոտ 23 տոկոսը, այսինքն մոտ 5.100.000 հեկտար տարածություն, որը եթե բաժանելու լինենք գյուղացիական շնչերի վրա, յուրաքանչյուրին հազիվ հասնում է 0,15 հեկտար հող։ Կորեան հողասակավությամբ աշխարհում ամենաաղքատ երկրներից մեկը պետք է համարել։ Այդ պայմաններում Կորեայի մշակվող հողերի 60 տոկոսը պատկանում էր կալվածատերերին ու կուլակներին, իսկ հողի հետ կապված գյուղացիական տնտեսությունների 80 տոկոսը ամբողջապես կամ մասամբ արենդատորներ էին։ Արենդը կրում էր կապալային բնույթ. վարձակալված հողի եկամուտի 60—80 տոկոսը բնամթերքով վճարվում էր արենդի դիմաց։

Երկրագործության մեջ կարևոր տեղ են գրավում բրնձի մշակությունը (ամբողջ ցանքատարածության ⅓ մասից ավելին), սոյան (760.000 հեկ.), բամբակը (347.000 հեկ.), ինչպես նաև հացահատիկային ու տեխնիկական մի շարք այլ կուլտուրաների մշակությունը։

Գյուղատնտեսության մեջ կարևոր դեր է կատարում շերամապահությունը, համեմատաբար թույլ է զարգացել անասնապահությունը, զգալի է ձկնորսությամբ զբաղվող տնտեսությունների քանակը և նրանից ստացվող եկամուտները։

Ճապոնիան իր գաղութային տիրապետության շրջանում կողոպտելով դուրս էր տանում Կորեայից բրնձի, բամբակի, ծխախոտի, շերամ-կոկոնի և այլ արտադրանքների մեծ բաժինը։

Կորեայի արդյունահանող ու վերամշակող արդյունաբերությունը անցյալում գտնվելով Ճապոնիայի ձեռքում և հանդիսանալով նրա ռազմական արդյունաբերության գլխավոր մատակարարող երկրներից մեկը, միակողմանի կերպով է զարգացել։ Կորեան հարուստ է հիդրոռեսուրսներով, քարածուխով (2 միլիարդ տոննա), առանձնապես հարուստ է մետաղահանքերով՝ երկաթի (մոտ 1 միլիարդ տոննա), մագնեզիտի (3 միլիարդ տոննա), ինչպես նաև պղնձի, բազմամետաղների, վոլֆրամի, մոլիբդենի, նիկելի, ոսկու, արծաթի և այլ հանքատեսակներով։



Կորեայում ճապոնական իմպերիալիզմը իր ռազմական տնտեսության կարիքները բավարարելու համար բավականաչափ զարգացրել էր հանքային արդյունահանության և մետաղաձուլության մի շարք ճյուղեր, որոնց թվում՝ սև և գունավոր մետաղաձուլությունը, ինչպես նաև գրաֆիտի, վոլֆրամի, փայլարի, ոսկու և այլ հանքանյութերի արդյունահանությունը։ Ճապոնիան կողոպտում և երկրից դուրս էր տանում նաև թեթև ու սննդի արդյունաբերության արտադրանքների մեծ մասը։

Ճապոնիան օգտագործեց Կորեայի տերիտորիան, որպես ռազմական պլացդարմ՝ 1931 թվի աշնանը Մանջուրիա ներխուժելու ժամանակ։ Ճապոնական միլիտարիզմը մանրամասնորեն մշակել էր իր ագրեսիվ պլանները նաև ՍՍՌՄ-ի դեմ զավթողական պատերազմ սկսելու համար։

1945 թվի օգոստոսի 15-ին Սովետական Բանակը ջախջախելով ճապոնական ուժերը Պորտ Ռասին և Սեյսին նավահանգիստներում ոտք դրեց Կորեայի տերիտորիայի վրա։ Ճապոնիան ստիպված եղավ նույն թվի սեպտեմբերի 2-ին ընդունել անվերապահ կապիտուլյացիա։ Սովետական Բանակի օգնությամբ կորեական ժողովրդի բաղձալի ազատությունը իրականություն դարձավ։ Նույն թվականի սեպտեմբերի 8-ին ամերիկյան զորքերը Չեմուլպո նավահանգստում ափ իջնելուց հետո Կորեան 38 զուգահեռականով բաժանվեց երկու մասի, որի հարավային մասը ժամա-

նակավորապես օկուպացվում և պատասխանատվությունը դրվում էր ԱՄՆ-ի վրա, իսկ հյուսիսային մասի պատասխանատվությունը՝ Սովետական Միության վրա։

1945 թվի դեկտեմբերին Մոսկվայում գումարված ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի արտաքին գործերի մինիստրների կոնֆերենցիան Կորեայի վերականգնման մասին ընդունեց հատուկ որոշում։ Այդ կոնֆերենցիայի որոշումների համաձայն Սովետական Միությունը և ԱՄՆ-ն իրենց վրա էին վերցնում Կորեայի խնամակալությունը հինգ տարի ժամկետով։ Միաժամանակ որոշվեց կազմակերպել ժամանակավոր կորեական դեմոկրատական կառավարություն։ Այդ որոշումներին հետագայում միացավ նաև Չինաստանը։ Հետագա դեպքերը ցույց տվեցին, թե ինչպես ավեր են կորեական ժողովրդի անկեղծ բարեկամները։

Կորեայի ազատագրումից անցած երեք տարում Հյուսիսային Կորեայում տեղի ունեցան սոցիալ-տնտեսական և քաղաքական, պատմական նշանակություն ունեցող իրադարձություններ։ Սովետական օկուպացիոն իշխանությունները կորեական ժողովրդին հանձնեցին ժողովրդից խլված և ճապոնացիների կողմից սեփականացված հանքերը, գործարանները, հողերը, տրանսպորտը և այլն, որոնք ազգայնացված են (այսինքն համաժողովրդական սեփականություն են հանդիսանում)։ Հյուսիսային Կորեայում կազմա-



կերպված ժամանակավոր Կոմիտեն, որը ներկայացնում էր ժողովրդական դեմոկրատական լայն ներկայացուցչական մարմին և որի գլուխն էր կանգնած իր ժողովրդի հերոս զավակ, քաղաքական խոշոր գործիչ Կիմ Իր Սենը, մեծ աշխատանք կատարեց կորեական ժողովրդի դեմոկրատական կազմակերպման, ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման, լուսավորության և այլ ասպարեզներում։

Հյուսիսային Կորեայում քաղաքացիների քաղաքական իրավունքների մասին ընդունված օրենքի համաձայն Կորեայի պատմության մեջ կորեուհին առաջին անգամ տղամարդուն հավասար իրավունք նվաճեց և այժմ կանայք մեծ ակտիվությամբ մասնակցում են վերածնվող Կորեայի բոլոր աշխատանքներին։ Կանանց դեմոկրատական միությունը իր շարքերում հաշվում է 750.000-ից ավելի անդամ։ Սահմանված է 8-ժամյա բանվորական օր, արգելված է երեխաների աշխատանքը, մտցված է սոցիալական ապահովագրությունը և այլն։ 1946 թվի ապրիլի ագրարային ռեֆորմի հետևանքով ճապոնացիների կողմից զավթված և խոշոր կալվածատերերի, կուլակների ու վանքերին պատկանող հողերից բռնագրավված է 1 միլիոն հեկտարից ավելի հող։ Հողը տրվում է նրան, ով անմիջապես աշխատանք է կատարում հողի վրա. մինչև այժմ հող են ստացել 725.000 բատրակային, հողազուրկ և սակավահող տնտեսու-

թյուններ, որոնք կազմում են Հյուսիսային Կորեայի գյուղացիական տնտեսությունների 72 տոկոսը։ Կազմակերպված է գյուղացիական աշխատավորական տնտեսություններին վարկով, գործիքներով և այլն օգնելու գործը։ Հյուսիսային Կորեայի գյուղացիությունը դուրս է եկել նախկին աղքատ ու կարիքի մեջ խրված վիճակից, գյուղատնտեսության արտադրողականությունը գնալով աճում է։

Արագորեն վերականգնվում են ճապոնացիների կողմից ավերված ձեռնարկությունները։ 1034 խոշոր և միջին ձեռնարկություններից, ճապոնացիները ավերել և շարքից դուրս էին բերել 1015 ձեռնարկություն։ Արդեն 1947 թվի սկզբներին վերականգնված էր 803 ձեռնարկություն։ 1947 թվին, համեմատած 1946 թվի հետ, արդյունաբերության համախառն արտադրանքը աճել էր 2,2 անգամով։

Մեծ նվաճումներ է ձեռք բերված ժողովրդական լուսավորության, անգրագիտության վերացման, բարձրագույն կրթության կազմակերպման, արվեստի ու կուլտուրայի բնագավառում։ Ուսուցման ամբողջ գործը տարվում է կորեական մայրենի լեզվով, որը արգելված էր ճապոնացիների տիրապետության շրջանում։

Վերածնվող ժողովրդի ստեղծագործող ուժերը կազմակերպում ու երկրի դեմոկրատական վերափոխման մեծ աշխատանքների ավանգարդում է գտնվում Կորեայի կոմունիստական պարտիան։ Հյուսիսային Կո-



րեայում կոմունիստական պարտիան 1945 թվին ուներ 6.000 անդամ, իսկ 1946 թվի օգոստոսին արդեն հասել էր մինչև 160.000-ի։ 1946 թվի օգոստոսին Հյուսիսային Կորեայի կոմունիստական պարտիային միացավ Նոր ժողովրդական պարտիան և վերանվանվեց Կորեայի Աշխատավորական պարտիա, որի շարքերում 1947 թվի հունվարի 1-ին հաշվվում էր 562.000 անդամ։ Աշխատավորական պարտիան իր ճիշտ քաղաքականության հետևանքով կարողացել է համախմբել դեմոկրատական տարբեր պարտիաներին ու կազմակերպություններին Միացյալ Ազգային-դեմոկրատական ճակատի կազմակերպության մեջ, որի անդամների ընդհանուր քանակը 6 միլիոն մարդուց ավելի է։

Բոլորովին հակառակ պատկեր ենք մենք տեսնում ամերիկյան օկուպացման շրջանում։ Հարավում ամերիկյան իշխանություններն իրենց ձեռքը վերցրին ճապոնացիներին պատկանող գործարանները, հանքերը, տրանսպորտային տնտեսությունը և այն տնօրինում են ըստ իրենց հայեցողության։ Ձեռնարկությունների ու հանքերի միայն մի մասը հանձնվել է կորեական կապիտալիստներին։ Հարավային Կորեայում հողը շարունակում է մնալ կալվածատերերի ու կուլակների ձեռքում, այդ այն ժամանակ, երբ բազմամիլիոն աշխատավորական գյուղացիական տնտեսությունները և սակավահող գյուղացիները տառապում են կարիքի ու աղքատության մեջ։ Լայնորեն Հարավային Կորեա է թափանցում ամերիկյան կա-

պիտալը, որն արդեն գերիշխող դեր է կատարում
երկրի ներքին ու արտաքին տնտեսական կյանքում։
Ամերիկյան իշխանությունները հենվելով տեղական
բուրժուական-կալվածատիրական ռեակցիոն ուժերի
վրա, ամեն կերպ արգելակում են դեմոկրատական
որևէ ձեռնարկում։

Ամերիկյան օկուպացիոն իշխանությունները, ԱՄՆ-ի
կառավարության ցուցմունքներով, Հարավային Կորեա-
յում վարում են երկիրը աստիճանաբար ամերիկյան
կապիտալից լիակատար տնտեսական կախման մեջ
դնելու, Կորեան գաղութացնելու և իրենց ռազմական
հենակետերից մեկը դարձնելու քաղաքականություն։
Ահա թե ինչու ԱՄՆ-ը աստիճանաբար խոչընդոտներ
ստեղծեց և ապա բոլորովին հրաժարվեց Մոսկվայի
կոնֆերենցիայի ընդունած որոշումներից՝ միասնական
դեմոկրատական անկախ Կորեայի կա-
ռավարություն կազմելուց և վարում է Հարավա-
յին Կորեան Կորեայից անջատելու հակաժո-
ղովրդական քաղաքականությունը։ Կորեական ժողո-
վուրդը մերժում է այդ քաղաքականությունը և պա-
հանջում է հետևողականորեն և մինչև վերջը կենսա-
գործել Մոսկվայի կոնֆերենցիայի որոշումները։
Աճում ու կազմակերպվում են Հարավային Կորեայի
դեմոկրատական ժողովրդական ուժերը։ Հարավային
Կորեայի դեմոկրատական ուժերը համախմբված են
միացյալ ազգային-դեմոկրատական ճակատի շուրջը,
որի մեջ մտնում են դեմոկրատական տարբեր պար-



տիաներ ու կազմակերպություններ։ Ազգային-դեմո-
կրատական ճակատի անդամների քանակը 1948 թվի
սկզբներին անցնում էր 5 միլիոնից։ Հարավային
Կորեայում ժողովրդական դեմոկրատական շարժման
կազմակերպիչն ու ղեկավարն է Հարավային Կորեայի
աշխատավորական պարտիան (կոմունիստական և նոր
ժողովրդական միացյալ պարտիան), որն իր շարքե-
րում ունի մինչև մեկ միլիոն անդամ։

Ամերիկյան ռազմական իշխանությունները աճող
ժողովրդական շարժումները ճնշելու և Կորեան մաս-
նատելու իրենց քաղաքականությունը իրագործելու
համար կազմակերպել են 60.000-ոց ոստիկանական
բանակ և պահում են երկրում մինչև 30.000 ամերիկ-
յան ռազմական ուժեր։ 1948 թվի մայիսի 10-ին Հա-
րավային Կորեայում անջատ «ընտրություններ» կազ-
մակերպելով, ԱՄՆ-ը վերջնականապես ձգտում է
իրագործել Կորեայի բաժանումը։ Մայիսյան ընտրու-
թյունները բոյկոտվեցին ժողովրդի հոծ մեծամաս-
նության կողմից, այդ չխանգարեց «օրինական»
համարելու ընտրությունները և «ազգային» ժողով
մտցնելու 84 կալվածատեր, 32 կապիտալիստ, 23 չի-
նովնիկ։

Կորեական ժողովրդի պայքարը միասնական ան-
կախ դեմոկրատական Կորեայի համար իր լավագույն
արտահայտությունը գտավ 1948 թվի հունիսի 29-ից
մինչև հուլիսի 6-ը Փխենյան քաղաքում գումարված
Հարավային և Հյուսիսային պարտիաների ու կազ-

մակերպությունների խորհրդակցության որոշումների մեջ։ Այդ որոշման հիման վրա օգոստոս ամսին տեղի ունեցան համակորեական ժողովրդական ընտրություններ՝ Կորեայի Գերագույն ժողովրդական ժողով և համակորեական դեմոկրատական ազգային կառավարություն կազմակերպելու համար։ Այդ ընտրություններին Հյուսիսային Կորեայում մասնակցեցին բոլոր ընտրողների 99,97 տոկոսը, իսկ Հարավային Կորեայում՝ 77,4 տոկոսը։ Հյուսիսային Կորեայում ընտրություններին մասնակցողների 97 տոկոսը քվեարկեց հօգուտ Միասնական դեմոկրատական ճակատի թեկնածուների օգտին։ Կորեայի Գերագույն ժողովրդական ժողովի 572 ընտրված դեպուտատներից 120-ը բանվորներ են, 194-ը գյուղացիներ, 152 ծառայող, 7 տնայնագործ, 22 առևտրական, 29 ձեռնարկատեր, 33 կուլտուրայի աշխատող և 15 այլ անձինք։ Դեպուտատներից 69-ը կանայք են։ Դեպուտատներից 360-ը հանդիսանում են Հարավային Կորեայի ժողովրդական ընտրյալներ, իսկ 212-ը՝ Հյուսիսային Կորեայից։ Այդ ընտրությունները կորեական ժողովրդի քաղաքական խոշոր հաղթանակն է հանդիսանում։

Սեպտեմբերի սկզբներին Փխենյան քաղաքում հրավիրվեց Գերագույն ժողովրդական ժողովի առաջին սեսիան։ Սեսիայում քննարկվեցին Կոնստիտուցիայի հաստատման, Կորեայի կառավարություն կազմելու և այլ հարցերը։ Սեսիան միաձայն հաստատեց Կոնս-



ստիտուցիան և երկրում հռչակեց Ժողովրդական Դեմոկրատական Ռեսպուբլիկա։ Կազմակերպվեց կառավարություն՝ Կիմ Իր Սենի գլխավորությամբ։ Սեսիան հատուկ դիմումով դիմեց ԱՄՆ-ի և Սովետական կառավարություններին և խնդրեց որ այդ պետությունները Կորեայում գտնվող իրենց զորքերը դուրս բերեն Կորեայից։ Սովետական Միությունը ընդառաջեց Կորեական ժողովրդական ժողովի դիմումին և որոշեց սովետական զորքերը դուրս բերել Կորեայից։ 1948 թվի հոկտեմբերի երկրորդ կեսից Սովետական զորքերը սկսեցին մեկնել Կորեայից Սովետական Միություն։

ԱՄՆ-ի կառավարությունը շարունակում է իր զորքերը պահել Հարավային Կորեայում, մերժելով 1947 թ. սեպտեմբերին Սովետական Միության առաջարկը՝ Կորեայից միաժամանակ ԱՄՆ-ի և Սովետական Միության ռազմական ուժերը դուրս բերելու մասին, ԱՄՆ-ը անտես է առնում նաև կորեական կառավարության դիմումը, դրանով ավելի ակնհայտ դարձնելով Կորեան գաղութացնելու և այն որպես ռազմական պլացդարմ օգտագործելու իր իմպերիալիստական ձգտումները։

Հարավային Կորեայում օկուպանտների և նրանց ստեղծած մարիոնետային «կառավարության» ռեակցիոն ռեժիմի դեմ արդեն բռնկել է ժողովրդական ապստամբություն, որն արագորեն ծավալվում է ընդգրկելով նոր շրջաններ։ Հարավային Կորեայի ապստամբ ժողովուրդը պահանջում է անպայման դուրս բերել ա-

մերիկյան զորքերը իրենց նշկրից և Կորեայի բախտի տնօրինումը թողնել իրեն՝ կորեական ժողովրդին։

Կորեական Ժողովրդական Դեմոկրատական Կառավարության կողմից Սովետական կառավարությանն ուղղած դիմումի առթիվ, որով նա խնդրում էր դիվանագիտական հարաբերություններ սահմանել երկու երկրների միջև, ընկեր Ստալինը Կիմ Իր Սենին ուղղած պատասխանում գրում է.

«Սովետական կառավարությունը, որն անշեղորեն պաշտպանում է կորեական ժողովրդի իրավունքը ստեղծել իր միասնական անկախ պետությունը, ողջունում է Կորեական կառավարության կազմակերպումը և հաջողություն է ցանկանում նրան իր գործունեության մեջ՝ հօգուտ Կորեայի ազգային վերածնության և դեմոկրատական զարգացման»։

Սովետական կառավարության որոշումը Կորեական Ժողովրդական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի հետ դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին՝ մեծ երախտագիտությամբ և հրճվանքով ընդունեց կորեական ժողովուրդը։ Սովետական Միության օրինակին հետևեցին բազմաթիվ այլ պետություններ։ Կորեական ժողովուրդը իր ձեռքն է վերցրել իր բախտի տնօրինումը և արդեն նշել է իր զարգացման ուղին։ Ոչ մի ուժ չի կարող նրան շեղել այդ ուղուց։

Ս. ԲԵՐԲԵՐՅԱՆ

---

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

1. Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Երկեր, 4-րդ հատոր։ Հայպետհրատ։ Տիրաժ 20.000, 539 էջ, գինը՝ 10 ռ. 1948 թ.։

2. Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Երկեր, 5-րդ հատոր։ Հայպետհրատ։ Տիրաժ 20.000, 491 էջ, գինը՝ 10 ռ. 1948 թ.։

3. Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Երկեր, 6-րդ հատոր։ Հայպետհրատ։ Տիրաժ 20.000, 492 էջ, գինը՝ 10 ռ. 1948 թ.։

4. ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆ.— Ընտիր երկեր։ Հայպետհրատ։ Տիրաժ 5.000, 728 էջ, գինը՝ շքեղ կազմով 13 ռ. 1948 թ.։

5. Ն. Կ. ԻՎԱՆՈՎ.— «Սովետական պետությունը նոր տիպի պետություն է»։ Հայպետհրատ։ Տիրաժ 3.000, 90 էջ, գինը՝ 2 ռ. 1948 թ.։

6. Պրոֆ. Մ. Ա. ԼԵՈՆՈՎ.— «Մարքսիզմ-լենինիզմը գիտական կանխատեսության մասին» (կարդացած դասախոսության սղագրությունը)։ Հեռակա Մանկ. ինստիտուտի հրատարակություն։ Տիրաժ 1.500, 32 էջ, գինը՝ 1 ռ. 1948 թ.։


ԿՈՐԵԱ
ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ
ՔԱՐՏԵԶ
50 0 50 100 150 200 կմ.
Պխենյան-Պուկդո
Խամգյոն-Պուկդո
Ռաձին
Ցխենգդինբու
Նանամ
Սենգձին
Խամգյոն-Նամդո
Խամխին
Սինգիսյու
Պխենյան-Նամդո
Պխենյան
Գենզան
Ձիննամպխո
Խանխա-դո
Խայձձյու
Կայսենգ
Կանգուոն-դո
Սեուլ
Ձեմուլպխո
Կյոնգի-դո
Ցխյունցխեն
Ցխյունցխյոն-Պուկդո
Ցխյունցխյոն-Նամդո
Ցխենգձյու
Տեձեն
Կյոնգսան-Պուկդո
Կունսան
Ձյոնձյու
Տակու
Ձյոլլա-Պուկդո
Կյոնգսան-Նամդո
Մասանպխո
Կվանձյու
Ձինձյու
Ֆուզան
Մոկպխո
Ձյոլլա-Նամդո
Ցուսիմա կղ.
Ձժենձժյու կղ.
ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆՇԱՆՆԵՐ:
Գավառի վարչական կենտրոններ.
Քաղաքային օկրուգի կենտրոններ.
Գավառի և քաղաքի օկրուգների վարչական կենտրոններ

7. Լ. Ա. ԼԵՈՆՏԵՎ.— «Երկրորդ համաշխարհային պատերազմի ծագումն ու բնույթը» *(կարդացած դասախոսության սղագրությունը)։ Հեռ. Մանկ. ինստիտուտի հրատարակություն։ Տիրաժ 1.500, 40 էջ, գինը՝ 1 ռ. 75 կոպ. 1948 թ.։*

8. Ակադեմիկոս Կ. Մ. ԲԻԿՈՎ.—«Նոր ներվային գործունեության վերաբերյալ Պավլովի ուսմունքում» *(կարդացած դասախոսության սղագրությունը)։ Հայկական ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատարակություն։ Տիրաժ 2.000, 26 էջ, գինը՝ 2 ռ. 1948 թ.։*

9. Տնտ. գիտ. թեկնածու Օ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ— «Սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու մասին» *(կարդացած դասախոսության սղագրությունը)։ Հայկական ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատարակություն։ Տիրաժ 2.000, 40 էջ, գինը՝ 2 ռ. 1948 թ.։*

10. Ա. ՇԱՀԻՆՅԱՆ— «Հայկական ՍՍՌ 1950 թվականին»: *Հայպետհրատ։ Տիրաժ 3.000, 160 էջ, գինը՝ 8 ռ. 1948 թ.։*

11. ՅՈՒ. Մ. ՖԻՆԿԼԵՐ— «Պատրաստ սանիտարական պաշտպանության» *Հայպետհրատ։ Տիրաժ 6.000, 107 էջ, գինը՝ 2 ռ. 1948 թ.։*



*«Ագիտատորի գրադարան» սերիայով լույս են տեսել.*

1. Ա. ԴՈԼՄԱՏՈՎ *և* Վ. ՄՈՒՐԱՋՅՈՎ— «Ցուցադրական ագիտացիան ձեռնարկությունում և կոլխոզում»: *Հայպետհրատ։ Տիրաժ 10.000, 87 էջ, գինը՝ 1 ռ. 1948 թ.։*

2. Ս. ՍՈՒՏՈՑԿԻ.— «Ագիտատորի աշխատանքը բերքի միջոցով»: *Հայպետհրատ։ Տիրաժ 10.000, 63 էջ, գինը՝ 1 ռ. 1948 ա.։*

*«Գիտա-մասսայական գրադարան» սերիայով լույս են տեսել.*

1. Պրոֆ. Վ. Կ. ՆԻԿՈԼՍԿԻ *և* պրոֆ. Ն. Ֆ. ՅԱԿՈՎԼԵՎ— «Ինչպես են մարդիկ խոսել սովորել»: *Հայպետհրատ։ Տիրաժ 3.000, 50 էջ, գինը՝ 2 ռ. 50 կոպ. 1948 թ.։*

2. Պրոֆ. Վ. Վ. ԼՈՒՆԿԵՎԻՉ.— «Երկիրը տիեզերական տարածության մեջ»: *Հայպետհրատ։ Տիրաժ 3.000, 57 էջ, գինը՝ 3 ռ. 1948 թ.։*

3. Ջ. ԿՈՍԵՆԿՈ— «Քուն և երազ»: *Հայպետհրատ։ Տիրաժ 3.000, 44 էջ, գինը՝ 2 ռ. 1948 թ.։*

4. Ֆիզ. մաթ. գիտ. դոկտ. Բ. Լ. ՁԵՐՁԵՎՍԿԻ— «Օդային օվկիանոս»: *Հայպետհրատ։ Տիրաժ 3.000, 44 էջ, գինը՝ 3 ռ. 1948 թ.։*

